Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 19 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.—*Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։*


---

# ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՓԱՌԱՊԱՆԾ ՀՈԲԵԼՅԱՆԸ

*«Մոտենում է մեր երկրի կյանքում նշանակալից օրը— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակը։*

*Բազմազգ Սովետական Միության մյուս բոլոր ժողովուրդների հետ միասին, Սովետական Հայաստանի աշխատավորները, հայրենասիրական բուռն խանդավառությամբ և հսկայական արտադրական նվաճումներով են դիմավորում Մեծ Հոկտեմբերի պանծալի տարեդարձը։ Մեր ռեսպուբլիկայի բանվորները, կոլխոզնիկները և ինտելիգենցիան անձնվիրաբար աշխատում են նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կենսագործելու համար, Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանները ժամկետից շուտ, մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյու-*

ցիայի 30-ամյակի օրը կատարելու և գերակատարելու համար։

Սոցիալիստական մրցության լայն ծավալման շնորհիվ առաջացած հսկայական արտադրական վերելքի պայմաններում բնականաբար մեջ կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքը հատուկ կարևորություն է ստանում։ Ձեռնարկություններում բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների մեջ, սոցիալիստական դաշտերում կոլխոզային գյուղացիության մեջ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին ծավալված աշխատանքային նոր վերելքը ագիտատորների առջև դնում է մեծ և պատասխանատու խնդիրներ։

Ռեսպուբլիկայի մի շարք առաջավոր ձեռնարկություններ՝ Երևանի Ավտոդողերի գործարանը, Կաբելի գործարանը, Լայն սպառման մետաղյա իրերի գործարանը, Երևանի Տեքստիլի ֆաբրիկան և բազմաթիվ այլ ձեռնարկություններ ժամկետից շուտ արդեն կատարել են Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա արտադրական պլանները և այժմ աշխատում են եկող տարվա պլանների կատարման հաշվին։ Խնդիրն այն է, որ



մինչև Մեծ Տոնի օրը մնացած ժամանակամիջոցում աշխատանքի առաջավոր սոցիալիստական մեթոդներն արմատավորելու, ստախանովականների և արտադրության առաջավորների փորձը լայնորեն մասսայականացնելու միջոցով անդուլ պայքար ծավալվի, որպեսզի պարտավորություն ստանձնած բոլոր ձեռնարկությունները կարողանան Մեծ Հոբելյանի օրը երկրին, մեր փառապանծ բոլշևիկյան պարտիային և մեծ առաջնորդ ընկեր Ստալինին ռապորտ տալ արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու մասին։

Առաջավորների փորձի մասսայականացման լավագույն եղանակներն են զրույցները, պլանների կատարման, առաջավորների ցուցանիշների տախտակները, պատի թերթերը և այլն։

Ուսանելի և ընդօրինակման արժանի է այն ագիտատորների փորձը, որոնք մի շարք ձեռնարկություններում բանվորների մեջ զրույցներ են անցկացնում այսպիսի թեմաներով՝ «Ստախանովականների նվաճումները դարձնել բոլոր բանվորների սեփականությունը», «Օր-ավուր կատարել պլանը, աշխատել ըստ գրաֆիկի, հմտորեն օգտագոր-

ծել ձեռնարկության ռեզերվները», «Մեքենայացման և գյուտարարության պլանների կատարման համար մղվող պայքարի կարևորագույն գործոնն են» և այլն։ Այս և նման թեմաներով անցկացվող զրույցները բարձրացնում են աշխատավորների սոցիալիստական գիտակցականությունը, նրանց պայքարի են հանում իրենց ձեռնարկությունների արտադրական պլանները կատարելու և գերակատարելու համար։

Խոշոր նվաճումներով է դիմավորում Հոկտեմբերյան ռևոլյուցիայի տարեդարձը նաև մեր Ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Հաջողությամբ ծավալելով հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը և կատարելով հացամթերումների պետական պլանը, Ռեսպուբլիկայի կոլխոզները, սովխոզները և ՄՏ կայաններն այժմ պետք է ամենակարճ ժամանակում և անկորուստ ավարտեն տեխնիկական կուլտուրաների բերքահավաքը, այդ ասպարեզում ևս պատվով կատարեն պետության հանդեպ ունեցած պարտավորությունները, մեծ առաջնորդ ընկեր Ստալինին տված խոստումը։

Ապահովել ընկեր Ստալինին ուղղված նամակի մեջ կոլխոզային գյուղացիության



ստանձնած պարտավորությունների լրիվ կատարումն ու գերակատարումը յուրաքանչյուր կոլխոզի, սովխոզի և ՄՏ կայանի կողմից—այս պատվավոր խնդրին պետք է ներկայումս ենթարկված լինի գյուղում կատարվող ամբողջ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը. պետք է է՛լ ավելի բարձրացնել կոլխոզային գյուղացիության աշխատանքային ակտիվությունը, նրանց մեջ դաստիարակել ստանձնած պարտավորությունների կատարման համար պատասխանատվության զգացումը։

Վերջերս հրապարակվեցին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը անասնաբուծության բարձր մթերատվության հասնելու համար, կարտոֆիլի, վուշի, կանեփի բարձր բերք ստանալու համար գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին։ Ագիտատորները պետք է գյուղի աշխատավորությանը լայնորեն պարզաբանեն այդ պատմական փաստաթղթերի բովանդակությունը, լայն ագիտացիայի միջոցով գյուղատնտեսության առաջավորների լավագույն փորձը

դարձնեն ամբողջ կոլխոզային գյուղացիության սեփականությունը։

Օգտագործելով ագիտացիոն աշխատանքի բոլոր լավագույն միջոցներն ու ձևերը, բոլշևիկյան ագիտացիայի ամենահարուստ փորձը, մոբիլիզացնենք քաղաքի և գյուղի աշխատավորների բոլոր ջանքերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի պանծալի հոբելյանը արժանավայել դիմավորելու համար։

Ավելի՛ լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցությունը ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակի։

Սովետական իշխանության գոյության երեսնամյակը նշանավորենք նորանոր նվաճումներով ու հաջողություններով ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։

—О—



# ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՏԱԼԻՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐ

Վ. Ի. Լենինը 1902 թվականին գրում էր. «Տվեք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն — և մենք կշրջենք Ռուսաստանը»։ Ռևոլյուցիոներների այդպիսի կազմակերպություն, մեր երկրի բանվոր դասակարգի ու բոլոր աշխատավորների առաջավոր մարքսիստական ջոկատն է հանդիսանում Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան։

Լենինի և Ստալինի ստեղծած բոլշևիկյան պարտիան հենց իր սկզբնավորման օրից պայքարել է աշխատավորներին ցարի, կալվածատերերի ու կապիտալիստների ճնշումից ազատագրելու համար, հետամնաց. Ռուսյլ և օտարերկրյա իմպերիալիստական պետություններից կիսակախյալ վիճակում

գտնվող Ռուսաստանը առաջավոր, հզոր սոցիալիստական տերություն դարձնելու համար: Բոլշևիկյան պարտիան, նրա առաջնորդներ Լենինը և Ստալինը անշեղորեն, քայլ առ քայլ դեպի այդ մեծ նպատակն էին տանում մեր երկրի բանվոր դասակարգին ու աշխատավորներին, պայքարի նրանց ուղին լուսավորելով մարքսիստական լենինյան թեորիայի ջահով:

1917 թվականի փետրվարին Ռուսաստանում հաղթեց բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան: Տապալվեց ցարական ինքնակալությունը: Ռևոլյուցիայի առաջնորդը, նրա նախամարտիկն էր ռուս բանվոր դասակարգը: Նա հերոսության հրաշքներ ցույց տվեց ցարիզմի դեմ մղած պայքարում, արիաբար գլխավորեց աշխատավոր մասսաների ռևոլյուցիոն շարժումը հանուն խաղաղության, հողի, հացի և ազատության:

Բայց փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակի պտուղներից օգտվեց բուրժուազիան: Նրան հաջողվեց դավաճանական պարտիաների՝ մենշևիկների ու էսեռների օգնությամբ զավթել իշխանությունը: Խոշոր կապիտալիստների և կալվածատերերի ներկայացուցիչներից ստեղծվեց ժամանակա-



վոր կառավարությունը: Իր գոյության հենց առաջին օրերից նա ցույց տվեց, որ ինքը հակաժողովրդական կառավարություն է, որը պաշտպանում է շահագործողների շահերը: Նա առաջվա նման շարունակում էր իմպերիալիստական, կողոպտիչ պատերազմ մղել, հողը թողնելով կալվածատերերի ձեռքում, ոչ մի միջոց ձեռք չէր առնում սովը և քայքայումը վերացնելու համար:

Բուրժուական ժամանակավոր կառավարության կողքին, ռևոլյուցիայի հենց առաջին օրերին ծնունդ առան բանվորական և զինվորական դեպուտատների Սովետները: Դրանք իսկական ժողովրդական իշխանությունն էին, բանվոր դասակարգի և գյուղացիության դիկտատուրայի օրգանները: Սովետները հենվում էին զինված ժողովրդի՝ զինվորական շինել հագած բանվորների և գյուղացիների վրա: Այսպես երկրում ստեղծվեց յուրատեսակ մի իրադրություն — երկիշխանություն: Բանվորական և զինվորական դեպուտատների Սովետները կարող էին ամբողջ իշխանությունն իրենց ձեռքը վերցնել: Բայց դրան խանգարում էին մենշևիկներն ու էսեռները, որոնց ներկայացուցիչներին հաջողվեց Փետրվարյան բուրժուա-

դեմոկրատական ռևոլյուցիայի հենց առաջին օրերին Սովետներում զավթել տեղերի մեծամասնությունը:

Ժամանակավոր կառավարությունը չէր ուզում Ռուսաստանը փրկել վերահաս աղետից: Ժողովրդին, երկրին սպառնում էր մահացու վտանգ—սով, փլուզումն ու քայքայումը, անկախության լիակատար կորուստը և օտարերկրյա իմպերիալիստական պետությունների գաղութ դառնալը:

Մեր Հայրենիքի պատմության այդ կրիտիկական շրջանում միայն Լենինը և Ստալինը, միայն նրանց կողմից ղեկավարվող՝ բոլշևիկների փառապանծ պարտիան ժողովրդին ցույց տվին միակ ճիշտ ուղին:

Վ. Ի. Լենինը, որ այն ժամանակ տարագրության մեջ էր Շվեյցարիայում, ռևոլյուցիայի մասին առաջին լուրերն ստանալով, պարտիային և Ռուսաստանի բանվոր դասակարգին գրում էր. «Բանվորնե՛ր, դուք ցարիզմի դեմ մղվող քաղաքացիական պատերազմում պրոլետարական, ժողովրդական հերոսության հրաշքներ ցուցաբերեցիք: Դուք պետք է պրոլետարական և համաժողովրդական կազմակերպության հրաշքներ ցուցաբերեք, որպեսզի նախապատրաստեք



ձեր հաղթանակը ռևոլյուցիայի երկրորդ էտապում»:

Այդ երկրորդ էտապը հաջողությամբ նախապատրաստելու և անցկացնելու համար, սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար հսկայական նշանակություն ունեցավ այն բանը, որ Ռուսաստանի այն ժամանակվա կենտրոնը՝ Պետրոգրադ վերադարձան Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը, որոնք սերտ համագործակցությամբ ղեկավարում էին բոլշևիկյան պարտիայի և բանվոր դասակարգի պայքարը հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի:

Ընկեր Ստալինը Տուրուխանյան աքսորից Պետրոգրադ եկավ 1917 թվականի մարտի 12 (25)-ին: Հենց անմիջապես նա գլխավորեց պարտիայի և նրա կենտրոնական օրգան «Պրավդա»-ի աշխատանքը: Ստալինը բոլշևիկներին համախմբում է պայքարելու բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից սոցիալիստականին անցնելու համար: «Պրավդա»-յում տպագրված նրա հոդվածներում պարտիան և բանվոր դասակարգը գտնում են ռևոլյուցիայի հիմնական հարցերի պատասխանը:

1917 թվականի ապրիլի 3 (16)-ին, եր-

կարատև վտարանդիից հետո, Ռուսաստան վերադարձավ Վ. Ի. Լենինը։

Պետրոգրադի բանվորները մեծագույն ցնծությամբ դիմավորեցին իրենց սիրելի առաջնորդին։ Հենց այդտեղ, կայարանի հրապարակում, զրահապատի վրայից դիմելով բանվորներին և ռևոլյուցիոն զինվորներին, Լենինն արտասանեց հայրենիք վերադառնալուց հետո իր առաջին ճառը, որը նա ավարտեց «Կեցցե՛ սոցիալիստական ռևոլյուցիան» պատմական կոչով։

Պետրոգրադ ժամանելու հենց հաջորդ օրը Վլադիմիր Իլյիչը հանդես եկավ հռչակավոր Ապրիլյան թեզիսներով։

Այդ թեզիսների մեջ նորը այն էր, որ դրանք տալիս էին տեսականորեն հիմնավորված, կոնկրետ պլան, որով պետք է սկսվեր անցումը սոցիալիստական ռևոլյուցիային, պայքարը Սովետների ռեսպուբլիկայի համար։

Լենինյան թեզիսները դրված էին բոլշևիկների Ապրիլյան կոնֆերենցիայի աշխատանքների հիմքում, կոնֆերենցիա, որտեղ Լենինը և Ստալինը պարտիայի նպատակակետը դարձրին պայքարը բուրժուա-դեմո-



կրատական ռևոլյուցիայից սոցիալիստականին անցնելու համար։

Լենինը և Ստալինը մատնանշեցին ռևոլյուցիայի երկրորդ էտապին անցնելու պրակտիկ խնդիրները։ Որո՞նք էին այդ խնդիրները։ Դրանք էին՝ սանձահարել բուրժուազիային, բանվորների վերահսկողության տակ դնել բանկերը, ֆաբրիկաներն ու գործարանները, մթերքների արտադրությունն ու բաշխումը, հողը խլել կալվածատերերի ձեռքից և հանձնել գյուղացիներին, ազատություն տալ Ռուսաստանի ճնշված ժողովուրդներին, վերջապես, անհապաղ դադարեցնել իմպերիալիստական պատերազմը։ Բայց այդ խնդիրները կարող էին կատարվել՝ ամբողջ իշխանությունը բանվորական, գյուղացիական և զինվորական դեպուտատների Սովետների ձեռքն անցնելու դեպքում միայն։ Լենինը և Ստալինը առաջադրեցին «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը։ Լենինը և Ստալինը պարտիայի առջև, իբրև առաջնահերթ խնդիր, դրեցին Սովետներում մեծամասնությունն իրենց կողմը նվաճելը, Սովետներից մենշևիկներին ու էսեռներին, բուրժուազիայի աջակիցներին վռնդելը։

Մեր պարտիան նկատի ուներ խաղաղ ճանապարհով, մասսաների մեջ բացատրական աշխատանք կատարելու միջոցով մեծամասնություն նվաճել Սովետներում, փոխել նրանց քաղաքականությունը, իսկ Սովետների միջոցով փոխել կառավարության կազմն ու քաղաքականությունը։ Այդ՝ ռևոլյուցիայի խաղաղ զարգացման դիրքավորումն էր։

Ռևոլյուցիայի այդ բարդ շրջանում, երբ իրադարձությունների արընթաց զարգացումը պարտիայից պահանջում էր հմուտ, ճկուն տակտիկա, Լենինը և Ստալինը ղեկավարում են մասսաների պայքարը, նրանց կազմակերպում են բոլշևիկյան պարտիայի լոզունգների շուրջը, մոբիլիզացնում են նրանց՝ պայքարելու հանուն ռևոլյուցիայի հետագա զարգացման։

***

1917 թվականի հուլիսի սկզբներին տեղի ունեցան այնպիսի իրադարձություններ, որոնք բեկում առաջացրին ռևոլյուցիայի զարգացման մեջ։ Կոնտրռևոլյուցիան, համախմբելով իր շարքերը, բացահայտ քաղաքացիական պատերազմ սկսեց ժողովրդի դեմ։ Ժամանակավոր կառավարությունը Պետրո-



գրադում գնդակոծեց բանվորների ու զինվորների խաղաղ ցույցը։ Սկսվեցին դաժան հետապնդումները ռևոլյուցիոն բանվորների և զինվորների նկատմամբ, հալածանքները բոլշևիկյան պարտիայի և նրա առաջնորդների դեմ։ Ժամանակավոր կառավարությունը հրաման արձակեց Լենինին ձերբակալելու մասին։

Այսպիսով, ժամանակավոր կառավարությունը վերջնականապես գլորվեց կոնտրռևոլյուցիայի ճահիճը։ Երկիշխանությունը վերջացավ։ Վերջացավ հօգուտ բուրժուազիայի, որովհետև ամբողջ իշխանությունն անցավ ժամանակավոր կառավարության ձեռքը, իսկ Սովետներն իրենց էսեռա-մենշևիկյան ղեկավարությամբ դարձան ժամանակավոր կառավարության կցորդը։

Ռևոլյուցիայի այս կարևորագույն էտապում, երբ կոնտրռևոլյուցիոն ժամանակավոր կառավարության կողմից հալածվող ու հետապնդվող Լենինը գտնվում էր խոր ընդհատակում, ընկեր Ստալինն անմիջականորեն ղեկավարում է պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Կենտրոնական օրգանը։

Ստալինը պարտիայի համար, մեր ժողովրդի համար և ամբողջ մարդկության հա-

մար փրկեց Իլյիչի թանկագին կյանքը, վճռականորեն դեմ արտահայտվելով նրա ներկայանալուն կոնտրռևոլյուցիոներների դատարանին, ընդդիմանալով դավաճաններ Կամենևի, Ռիկովի, Տրոցկու առաջարկին՝ Լենինին ժամանակավոր կառավարության դատին հանձնելու վերաբերյալ։

Այն օրերին, երբ Լենինը ընդհատակում էր գտնվում, Ստալինը սերտ կապ է պահպանում և նամակագրություն ունենում նրա հետ։ Երկու անգամ ընկեր Ստալինը այցելում է Լենինին Պետրոգրադի մոտ գտնվող Ռազլիվ կայարանի շրջանում, որտեղ ռևոլյուցիայի առաջնորդը թաքնված էր ժամանակավոր կառավարության խուզարկու շներից։

Լենինը և Ստալինը որոշեցին պարտիայի խնդիրները պայքարի նոր պայմաններում։ Այդ խնդիրները շարադրված էին բոլշևիկյան պարտիայի 6-րդ համագումարի որոշումների մեջ, համագումար, որը Լենինի հանձնարարությամբ, ղեկավարում էր ընկեր Ստալինը։

Պարտիայի 6-րդ համագումարում, որն անլեգալ կերպով տեղի ունեցավ 1917 թվականի հուլիս-օգոստոսին, ընկեր Ստալինը



հանդես եկավ Կենտկոմի հաշվետու զեկուցումով և քաղաքական դրության մասին զեկուցումով։ Առաջնորդի այդ ելույթների մեջ հստակորեն շարադրված էին պարտիայի խնդիրներն ու տակտիկան սոցիալիստական ռևոլյուցիայի համար մղվող պայքարում։

Վեցերորդ համագումարում տված իր զեկուցումների մեջ ընկեր Ստալինը ամենայն պարզությամբ ցույց էր տալիս, որ չնայած բուրժուազիայի բոլոր ջանքերին՝ ճնշելու ռևոլյուցիան, ռևոլյուցիան աճում և զարգանում է։ Ռևոլյուցիան խնդիր է դնում մթերքների արտադրության և բաշխման նկատմամբ բանվորական վերահսկողությունն իրագործելու, հողը գյուղացիներին հանձնելու, իշխանությունը բուրժուազիայի ձեռքից բանվոր դասակարգի և գյուղացիական չքավորության ձեռքը հանձնելու մասին։ Ընկեր Ստալինը մատնանշում էր, որ ռևոլյուցիան իր բնույթով դառնում է սոցիալիստական։

Հուլիսյան օրերից հետո երկրում ամբողջ իշխանությունը կենտրոնացավ բուրժուական ժամանակավոր կառավարության ձեռքում, որը շարունակում էր զինաթափ անել ռևոլյուցիան, ջախջախել նրա կազմակերպությունները, ջախջախել բոլշևիկների պար-

տիան։ Ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հնարավորությունները չքացան։ Մնում է մեկ բան, ասում էր ընկեր Ստալինը, իշխանությունն ուժով գրավել, տապալելով ժամանակավոր կառավարությունը։

Նոր պայմաններում բոլշևիկները ժամանակավորապես հերթից հանեցին իշխանությունը Սովետների ձեռքն անցնելու լոզունգը։ Ընկեր Ստալինը 6-րդ համագումարում մատնանշեց, որ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը ժամանակավորապես հերթից հանելը չէր նշանակում հրաժարվել Սովետների իշխանության համար պայքարելուց։ Խոսքը վերաբերում էր ոչ թե առհասարակ Սովետներին՝ իբրև ռևոլյուցիոն պայքարի օրգանների, այլ միմիայն տվյալ Սովետներին, որ մենշևիկներն ու էսեռները դարձրել էին կոնտրռևոլյուցիոն բուրժուազիայի կցորդը։

«Ռևոլյուցիայի խաղաղ ժամանակաշրջանը վերջացավ,— ասում էր ընկեր Ստալինը,— սկսվել է ոչ-խաղաղ ժամանակաշրջանը, գոտեմարտերի և պայթյունների ժամանակաշրջանը...»։

Ընկեր Ստալինը հակահարված տվեց պարտիայի թշնամիներին— տրոցկիստնե-



րին, որոնք փորձում էին պարտիայի բռնած սոցիալիստական ռևոլյուցիայի գիծը կախման մեջ դնել Արևմուտքում պրոլետարական ռևոլյուցիայից։ Պարտիայի 6-րդ համագումարում ունեցած իր ելույթների մեջ ընկեր Ստալինը պաշտպանեց և զարգացրեց մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան ուսմունքը։

«Բացառված չէ այն հնարավորությունը,— ասում էր ընկեր Ստալինը,— որ հենց Ռուսաստանը հանդիսանա սոցիալիզմի ուղին հարթող երկիրը... Պետք է դեն շպրտել այն հնացած պատկերացումը, թե միայն Եվրոպան կարող է ուղի ցույց տալ մեզ։ Գոյություն ունի դոգմատիկ մարքսիզմ և ստեղծագործական մարքսիզմ։ Ես կանգնած եմ վերջինիս հողի վրա»։

Ստալինյան մեծ կանխատեսումն իրագործվեց— Ռուսաստանն առաջինը եղավ, որ ցույց տվեց սոցիալիզմի ուղին։

Այդ պատմական համագումարը մոբիլիզացրեց պարտիայի բոլոր ուժերը, շարժման մեջ դրեց պարտիայի կողմից ղեկավարվող պրոֆմիութենական և երիտասարդական կազմակերպությունները հաղթական սոցիալիստական ռևոլյուցիան իրագործելու համար։ Պարտիայի 6-րդ համագումարն առաջադրեց

զինված ապստամբության նախապատրաստվելու լոզունգը, ժամանակավոր կառավարությունը տապալելու համար։

Լենինի դիրեկտիվներով, ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ պարտիայի 6-րդ համագումարը դարձավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Ռևոլյուցիայի նախապատրաստման համագումար։

Բոլշևիկյան պարտիայի 6-րդ համագումարի դելեգատները, համագումարի աշխատանքներն ավարտվելուց անմիջապես հետո, մեկնեցին բանվորական կենտրոնները, ռազմաճակատ, գյուղերը, և մասսաների մեջ տարան զինված ապստամբության անհրաժեշտության գաղափարը։ Բոլշևիկյան պարտիայի հեղինակությունն ամենուրեք անընդհատ աճում էր։

Բայց կոնտրռևոլյուցիան նույնպես հավաքում էր իր ուժերը։ Օգոստոսի 25-ին այն ժամանակվա գլխավոր հրամանատար գեներալ Կոռնիլովը, ռուսաստանյան և օտարերկրյա իմպերիալիստների ցուցումով, խռովություն բարձրացրեց, ռևոլյուցիան ճնշելու և ցարիզմը վերականգնելու համար։ Պետրոգրադի վրա շարժվեց գեներալ Կրիմովի հեծելազորային կորպուսը։ Այդ կորպուսի



հետ միասին, ռևոլյուցիոն Պետրոգրադի դեմ էին գնում անգլիական տանկերը։ Կոնտրռևոլյուցիոն խռովությանն ամենաակտիվ մասնակցություն ունեին անգլիական դեսպան Բյուկենենը և ժամանակավոր կառավարությանը կից՝ անգլիական շտաբի ներկայացուցիչ գեներալ Նոքսը։

Բոլշևիկների պարտիայի Կենտրոնական Կոմիտեն բանվորներին, զինվորներին և նավաստիներին կոչ արեց ակտիվ զինված հակահարված տալ կոնտրռևոլյուցիային։ Կոռնիլովականության դեմ մղած պայքարում ամրապնդվեցին ու կոփվեցին Կարմիր գվարդիան և բոլշևիկյան զինվորական կազմակերպությունները բանակում ու նավատորմում։ Կոռնիլովյան խռովության ջախջախումը ռևոլյուցիայի պատմության մեջ նոր ժամանակաշրջան բացեց—գրոհի կազմակերպման ժամանակաշրջանը։

Աշխատավոր մասսաները այդ օրերին է՛լ ավելի համոզվեցին, որ բոլշևիկների պարտիան միակ պարտիան է, որը կանգնած է ժողովրդի շահերի պահպանման դիրքում և կարող է երկիրը փրկել կործանումից։ Ոչ միայն բանվոր դասակարգը, այլև գյուղացիների ու զինվորների լայն մասսաներն ավելի ու ավելի էին հասկանում, որ առանց

ժամանակավոր կառավարությունը տապալելու, իրենք չեն ստանա ո՛չ ազատություն, ո՛չ հող, ո՛չ հաց, ո՛չ խաղաղություն։

Աճում էր համաժողովրդական ռևոլյուցիոն վերելքը։ Կոռնիլովականության ջախջախումը, որն իրականացվեց ընկեր Ստալինի ղեկավարությամբ, ցույց տվեց, որ սոցիալիստական ռևոլյուցիայի քաղաքական բանակը, որը ստեղծում էին բոլշևիկները, արագորեն աճում և ամրապնդվում է։

Կոռնիլովականության դեմ մղած պայքարում աշխուժացան, ծավալեցին իրենց գործունեությունը և ամրապնդվեցին Սովետները, որոնք մինչ այդ սկսել էին թուլանալ։

Օրեց-օր աճում էր բոլշևիկների ազդեցությունը Սովետներում։ Օգոստոսի 31-ին, կոռնիլովականության ջախջախման հենց հաջորդ օրը, Պետրոգրադի Սովետն արտահայտվեց բոլշևիկների քաղաքականության օգտին։ Նրանից անմիջապես հետո բոլշևիկների կողմն անցավ Մոսկվայի Սովետը։

Այդ պայմաններում Լենինը և Ստալինը նորից առաջ են քաշում «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը։ Բայց դա արդեն իշխանությունը խաղաղ կերպով



էսեռա-մենշևիկյան սովետների ձեռքն անցնելու հին լոզունգը չէր։ Դա ժամանակավոր կառավարությունը զինված ապստամբության միջոցով տապալելու և ամբողջ իշխանությունը բոլշևիկների կողմից ղեկավարվող Սովետներին հանձնելու լոզունգն էր։

Սեպտեմբերի 12-ի և 14-ի (25—27-ի) միջև Լենինը գրեց երկու դիրեկտիվային նամակ՝ ուղղված բոլշևիկների Կենտրոնական Կոմիտեին, Պետերբուրգի և Մոսկվայի կոմիտեներին։ Նա մատնանշեց, որ բանվորական և զինվորական դեպուտատների մայրաքաղաքային երկու Սովետներում էլ մեծամասնություն ստանալով, բոլշևիկները կարո՛ղ են և պե՛տք է պետական իշխանությունն իրենց ձեռքը վերցնեն։ Այդ նամակներում (դրանցից մեկը հենց այդպես էլ կոչվում էր՝ «Մարքսիզմը և ապստամբությունը») Լենինն ընդհանրացրեց զինված ապստամբության մասին Մարքսի և Էնգելսի արտահայտած մտքերը։ Այդ և հետագա իր նամակներում ու հոդվածներում Վլադիմիր Իլյիչը մշակեց ապստամբության կոնկրետ պլանը, մատնանշելով, թե ինչպես օգտագործել զորամասերը, նավատորմն ու

Կարմիր գվարդիան, թե առաջին հերթին ինչպիսի վճռական կետեր է անհրաժեշտ գրավել ապստամբության հաջողությունն ապահովելու համար, և այլն։

Լենինը սովորեցնում էր ապստամբությանը վերաբերվել իբրև արվեստի, այն լավ նախապատրաստել կազմակերպչորեն ու տեխնիկապես, կարողանալ օգտագործել ռևոլյուցիոն սիտուացիան, վճռողական ուժերը հավաքել վճռական տեղում և ճիշտ ընտրել կործանիչ հարված հասցնելու մոմենտը՝ թշնամուն հաստատապես ջախջախելու և հաղթելու համար։

Սեպտեմբերի 15(28)-ին, հենց որ Լենինի նամակներն ստացվեցին Պետրոգրադում, ընկեր Ստալինը դրանք դրեց բոլշևիկների Կենտկոմի քննարկմանը, առաջարկելով այդ նամակներն ուղարկել տեղական պարտիական կազմակերպություններին իբրև դիրեկտիվ։ Ստոր դավաճան Կամենևը խիստ կերպով հանդես եկավ Լենինի դեմ և առաջարկեց այրել նրա նամակները։ Կենտրոնական Կոմիտեն զայրույթով մերժեց այդ առաջարկը և ընդունեց ընկեր Ստալինի առաջարկը։

Պարտիայի կյանքի մեջ այդ նշանակալից



ժամանակաշրջանում, ինչպես և միշտ, Լենինը և Ստալինը միասին կազմակերպեցին սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը։ Ղեկավարելով պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և կենտրոնական օրգանը, ընկեր Ստալինը, լենինյան ցուցումներին համապատասխան, մասսաներին նախապատրաստում էր ապստամբության համար։ Իլյիչի առաջին նամակները Կենտկոմում քննարկվելուց մեկ օր հետո ընկեր Ստալինը պարտիայի կենտրոնական օրգանում տպագրեց մի առաջնորդող հոդված՝ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» վերնագրով։ Ընկեր Ստալինի հոդվածները, որոնք օր-ավուր լույս էին տեսնում «Բաբոչի պուտ»-ում (այդ անունով էր այն ժամանակ հրատարակվում ժամանակավոր կառավարության կողմից արգելված «Պրավդան»), խոր ու համոզիչ կերպով պրոպագանդա էին անում իշխանությունը բանվորների և գյուղացիական չքավորության կողմից նվաճելու լենինյան գաղափարները։

Այդ ժամանակաշրջանում ընկեր Ստալինը հսկայական ուշադրություն է նվիրում ռևոլյուցիայի զինված ուժերի նախապատրաստմանը— Կարմիր գվարդիայի աճմանն ու

ամբապնդմանը, բանվորներին զինելուն, բանակի և նավատորմի զորամասերում աշխատանքը ուժեղացնելուն, դրանք ռեվոլյուցիայի կողմը նվաճելուն։

Լենինը և Ստալինը աչալուրջ հետևում էին կոնտրռևոլյուցիայի մանյովրներին։ Կերենսկու կառավարությունը պատրաստվում էր Պետրոգրադը հանձնել գերմանացիներին, նրանց հետ միասին ռևոլյուցիան խեղդելու համար։ Կռահելով թշնամու նենգ դիտավորությունը, Լենինը պահանջում է հաստատակամորեն, վճռաբար և արագ կերպով պատրաստվել ապստամբության համար։

Հոկտեմբերի 7(20)-ին Լենինը անլեգալ կերպով Ֆինլանդիայից եկավ Պետրոգրադ։ Ամենից առաջ Լենինը պահանջեց տեսակցություն ունենալ Ստալինի հետ։

Ռևոլյուցիայի առաջնորդների հանդիպումը մի քանի ժամ տևեց։ Լենինը հավանություն տվեց ընկեր Ստալինի կողմից շարադրված՝ ապստամբության կոնկրետ պլանին։

Հոկտեմբերի 10 (23)-ին կայացավ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի նիստը, որտեղ Վլադիմիր Իլյիչի զեկուցման առթիվ պատմական որոշում ընդունվեց՝ ամենամոտիկ օրերին սկսել զինված ապստամբությունը։ Հոկտեմբերի 16 (29)-ին կայացավ պարտիայի Կենտկոմի ընդլայնած նիստը։ Այդտեղ ընտրվեց ապստամբությունը ղեկավարող Պարտիական կենտրոն՝ ընկեր Ստալինի գլխավորությամբ։



Կենտրոնական Կոմիտեի հոկտեմբերի 10-ի և 16-ի նիստերում ընկեր Ստալինը հանդես եկավ պաշտպանելով Լենինի առաջարկը՝ ամենամոտիկ օրերին զինված ապստամբությունն սկսելու մասին։ Ընկեր Ստալինը անարգանքի սյունին գամեց Զինովևին, Կամենևին, Տրոցկուն և մյուս դավաճաններին, որոնք ճգնում էին վիժեցնել ապստամբությունը։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն գնաց Լենինի և Ստալինի մատնանշած ուղիով։

Լենինի և Ստալինի կողմից աճեցված՝ բոլշևիկների պարտիան կապիտալիզմի դեմ գրոհի պահին վիթխարի չափով աճել էր։ Ընկ. Սվերդլովի հաղորդագրության համաձայն, որ արվեց Կենտկոմի հոկտեմբերի 16-ի նիստում, պարտիան ուներ առնվազն 400 հազար անդամ (իսկ դեռ ապրիլի վերջերին պարտիան մոտ 80 հազար անդամ ուներ)։ Պետրոգրադում կային մոտ 50 հա-

վար բոլշևիկներ, Մոսկվայում և Մոսկվայի մարզում մոտ 35 հազար, Ուրալում ավելի քան 30 հազար։ Ամենուրեք բոլշևիկյան պարտիան, հաղթահարելով դժվարությունները, ոչնչացնելով նպատակի ճանապարհին եղած խոչընդոտները, իր հետևից տանում էր աշխատավորների միլիոնավոր մասսաներին, անբաժանորեն ղեկավարում էր պայքարը հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի։

Պարտիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի կազմակերպող ձեռքը երևում է նաև այն բանում, թե ուժերն ինչպես էին դասավորված երկրի վճռական շրջաններում Հոկտեմբերի նախօրյակին և Հոկտեմբերյան օրերին։ Բոլշևիկյան պարտիայի ամենաականավոր աշխատողները որպես Կենտկոմի լիազորներ ուղարկված էին Դոնբաս, Ուրալ, Կրոնշտադտ, ռազմաճակատ և այլն, տեղերում ապստամբությունը կազմակերպելու համար։ Ռևոլյուցիայի շտաբում՝ Պետրոգրադում, որտեղ ամբողջ պայքարը գլխավորում էին մեծ առաջնորդներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը, աշխատում էին բոլշևիզմի այնպիսի ամենաականավոր գործիչներ, ինչպես՝ Մ. Վ. Մոլոտովը, Յա. Մ. Սվերդլովը,



Ֆ. Է. Ձերժինսկին, Մ. Ի. Կալինինը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ա. Ա. Անդրեևը. Մոսկվայում Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ աշխատում էին այնպիսի փորձված բոլշևիկներ, ինչպես՝ Ի. Ի. Սկվորցով-Ստեպանովը, Ե. Մ. Յարոսլավսկին, Մ. Ֆ. Շկիրյատովը. Պովոլժյեյում՝ Վ. Վ. Կույբիշևը և Ն. Մ. Շվերնիկը, Իվանովո-Վոզնեսենսկի արդյունաբերական շրջանում՝ Մ. Վ. Ֆրունզեն, Հյուսիսային Կովկասում՝ Ս. Մ. Կիրովը, Ուրալում՝ Ա. Ա. Ժդանովը, Ուկրաինայում՝ Կ. Ե. Վորոշիլովը և Ֆ. Ա. Սերգեևը (Արտյոմը), Բելոռուսիայում՝ Ա. Ֆ. Մյասնիկովը և Լ. Մ. Կագանովիչը, Անդրկովկասում՝ Ս. Շահումյանը և Ա. Ջափարիձեն։

Պետրոգրադ, Լենինի և Ստալինի մոտ էին կենտրոնանում ամբողջ երկրում բոլշևիկների պարտիայի ծավալած վիթխարի աշխատանքի թելերը։ Լենինի անլեգալ բնակարանը նախապատրաստվող ապստամբության ընդհատակյա շտաբն էր։ Այստեղ Լենինը հանդիպում էր Ստալինի հետ, մանրամասն քննարկում էր ապստամբության պլանը։

Ընկեր Ստալինի կողմից գլխավորվող Պարտիական կենտրոնի ղեկավարությամբ, Պետրոգրադի Սովետի Ռազմա-ռևոլյուցիոն

կոմիտեն արագորեն իր ձեռքում կենտրո-
նացրեց կապը կայազորի բոլոր զորամասե-
րի հետ և Կարմիր գվարդիայի օպերատիվ
ղեկավարությունը։ Հոկտեմբերի 21-ին (նո-
յեմբերի 3-ին) բոլշևիկները բոլոր ռևոլյու-
ցիոն զորամասերն ուղարկեցին կոմիսար-
ներ։ Ընդամենը Պետրոգրադի կայազորի
զորամասերում և հիմնարկներում նշանակ-
վեցին մոտ 600 կոմիսարներ։ Ֆաբրիկանե-
րում, գործարաններում, զորամասերում
ապստամբությանը նախորդող օրերին ամ-
բողջ ժամանակ եռանդուն նախապատրաս-
տություն էր կատարվում։ Բանվոր-կարմիր
գվարդիականները զենքը ցած չէին դնում
ոչ աշխատանքի տեղում, ոչ տանը։

***

Լենինը և Ստալինը քայքայեցին ժամա-
նակավոր կառավարության պլանը, որ դա-
վաճաններ Կամենևի, Զինովևի և Տրոցկու
կողմից նախազգուշացված լինելով փորձում
էր Պետրոգրադ փոխադրել կոնտրռևոլյուցիոն
ուժեր և վաղօրոք ճնշել ապստամբությունը։
Կերենսկին իր ելույթն սկսեց Հոկտեմբերի
24-ի (Նոյեմբերի 6-ի), վաղ առավոտյան,
հրաման արձակելով բոլշևիկների կենտրո-



նական օրգան «Ռաբոչի պուտ» թերթն ար-
գելելու մասին։ Նա զրահապատներով ու-
ղարկեց յունկերների մի ջոկատ, որը գրա-
վեց խմբագրության և տպարանի շենքը։
Առավոտյան ժամը 6-ին մոտ, գործարան-
ներ գնացող բանվորներն այդ մասին հա-
ղորդեցին Ստալինին։ Ընկեր Ստալինը դեպի
խմբագրության շենքն ուղարկեց կարմիր
գվարդիականների և ռևոլյուցիոն զինվորների
մի ջոկատ, որը հետ մղեց զրահապատները,
և ուժեղ պահակներ կարգեց տպարանի
մոտ։ Առավոտյան ժամը 11-ի մոտերքը լույս
տեսավ «Ռաբոչի պուտ» թերթի համարը՝
ընկեր Ստալինի գրած «Ի՞նչ է հարկավոր
մեզ» առաջնորդող հոդվածով։ Այդ հոդվածի
մեջ ընկեր Ստալինը աշխատավորներին կոչ
էր անում տապալել բուրժուական ժամանա-
կավոր կառավարությունը։
Միաժամանակ, ընկեր Ստալինի ցուցու-
մով շտապ կերպով Սմոլնիին մոտեցվեցին
ռևոլյուցիոն զինվորների ու կարմիրգվար-
դիականների ջոկատներ։
Ապստամբությունն սկսվեց։ Ամբողջ ժա-
մանակ Սմոլնիում էին գտնվում ընկեր
Ստալինը և Պարտիական կենտրոնի ան-
դամներ Սվերդլովն ու Ձերժինսկին։ Նրանք

մշակում էին ապստամբության պլանի ման-րամասնությունները, նշում էին թե որ զո-րամասերը պետք է գրավեն հեռագրատունը. հեռախոսային կայանը. պահպանեն կա-մուրջները։

Ապստամբության պլանը մշակվեց Լենինի ցուցումներին լրիվին համապատասխան։ Ընկեր Ստալինը կապավորների միջոցով մշտական կոնտակտ էր պահպանում Իլյիչի հետ, նրան տեղեկացնում էր սկսված ապըս-տամբության ընթացքի մասին։ Հոկտեմբերի 24-ի գիշերը Լենինը եկավ Սմոլնի։ Ստալինը անմիջապես նրան տեղյակ դարձրեց իրա-դարձություններին։ Այդ պահից սկսած Վլադիմիր Իլյիչն իր ձեռքը վերցրեց ապըս-տամբության անմիջական ղեկավարությու-նը։

Հոկտեմբերի 25-ի (Նոյեմբերի 7-ի) ցե-րեկվա ընթացքում Կարմիր գվարդիան և ռևոլուցիոն զորքերը գրավեցին կայարան-ները, փոստը, հեռագրատունը, մինիստրու-թյունները, Պետական բանկը։

Հոկտեմբերի 25-ին (Նոյեմբերի 7-ին) հրապարակվեց Լենինի գրած դիմումը՝ «Ռուսաստանի քաղաքացիներին», որի մեջ հաղորդվում էր, որ ժամանակավոր կառա-



վարությունը տապալված է և պետական իշ-խանությունն անցել է Սովետների ձեռքը։

Հոկտեմբերի 25-ի՝ լույս 26-ի գիշերը ռևո-լյուցիոն բանվորները, զինվորներն ու նա-վաստիները գրոհով գրավեցին Ձմեռային պալատը և ձերբակալեցին ժամանակավոր կառավարությունը։

Սովետների Համառուսաստանյան երկրորդ համագումարը բացվեց Սմոլնիում, 1917 թվականի հոկտեմբերի 25-ի երեկոյան ժա-մը 10-ից 45 րոպե անց, երբ ապստամբու-թյունը Պետրոգրադում արդեն բուռն թափով ծավալվել էր և իշխանությունը մայրաքաղա-քում փաստորեն գտնվում էր Պետրոգրադի Սովետի ձեռքում։ Համագումարը հռչակեց նոր իշխանություն—Սովետների իշխանու-թյունը։ Համագումարը կազմեց Սովետական կառավարություն՝ Լենինի և Ստալինի գլ-խավորությամբ։

Սովետների համագումարը աշխարհի ժո-ղովուրդներին կոչ արեց դադարեցնել պա-տերազմը, և ընդունեց հողի մասին դեկրե-տը, որի համաձայն անհապաղ ու առանց մի փրկագնի վերացվում էր հողի կալվա-ծատիրական սեփականությունը։ Հողը իր բոլոր ընդերքներով մեկ ընդմիշտ հայտա-

դառնում էր համաժողովրդական պետական սեփականություն։ Կալվածատերերին, վանքերին և ցարական ընտանիքին պատկանող հողերը հանձնվում էին բոլոր աշխատավորներին՝ անվճար օգտագործման համար։

Հաղթանակեց Սոցիալիստական ռևոլյուցիան, դեպի որն այնպես համարձակ ու վստահ, հաստատ ու շրջանկատ կերպով Լենինը և Ստալինը առաջնորդում էին պարտիային ու բանվոր դասակարգին։

Պետրոգրադից անմիջապես հետո Սովետների իշխանության համար հաղթական մարտերը ծավալվեցին Մոսկվայում և երկրի մյուս շրջաններում։ Սովետների իշխանությունը Ռուսաստանի ամբողջ հսկայական տերիտորիայում տարածվում էր այնպիսի արագ տեմպով, որ Լենինը այն անվանեց սովետական իշխանության «հաղթական երթ»։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան հաղթեց միայն այն պատճառով, որովհետև այն նախապատրաստել էր ու անցկացրեց բոլշևիկյան պարտիան, որը ստեղծել և ղեկավարում էին մեծ առաջ-



նորդներ Լենինն ու Ստալինը։ «Միայն մի այնպիսի պարտիա, ինչպես բոլշևիկների պարտիան է, որը բավականաչափ խիզախ էր, ժողովրդին վճռական գրոհի առաջնորդելու համար և բավականաչափ շրջանկատ՝ դեպի նպատակը տանող ճանապարհի բոլոր և ամեն տեսակ ստորջրյա քարերից խուսափելու համար, — միայն այդպիսի պարտիան կարող էր մի ընդհանուր ռևոլյուցիոն հոսանքի մեջ այդպես հմտորեն միացնել այնպիսի տարբեր ռևոլյուցիոն շարժումներ, ինչպես ընդհանուր-դեմոկրատական շարժումը հանուն հաշտության, գյուղացիական-դեմոկրատական շարժումը հանուն կալվածատիրական հողերի գրավման, ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը հանուն ազգային իրավահավասարության և պրոլետարիատի սոցիալիստական շարժումը հանուն բուրժուազիայի տապալման, հանուն պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման։

Կասկածից դուրս է, որ ռևոլյուցիոն այդ տարբեր հոսանքները մի ընդհանուր հզոր ռևոլյուցիոն հոսանքի մեջ միացնելը վճռեց կապիտալիզմի բախտը Ռուսաստանում» («ՀամԿ(բ)Պ պատմություն։ Համառոտ դասընթաց» էջ 292, հայ. հրատ.)։

Այսպես, երեսուն տարի սրանից առաջ ժողովրդի մեծ առաջնորդներ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի ղեկավարությամբ ստեղծվեց աշխարհում առաջին Սովետական պետությունը։ Մեծ և փառավոր ուղի, պատմական մեծ հաղթանակների ուղի է անցել նա այդ ժամանակից ի վեր։

Երեք տասնամյակ սրանից առաջ մեր ժողովուրդն իր բախտը վստահեց Լենինի-Ստալինի պարտիային։ Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ մեր ժողովուրդը փրկեց երկիրը կործանումից, որ նրան սպառնում էր 1917 թվականի հոկտեմբերի նախօրյակին, այն պաշտպանեց սպիտակգվարդիականներից ու ինտերվենտներից՝ քաղաքացիական պատերազմի տարիներին, կառուցեց սոցիալիստական հասարակարգ և համաշխարհային-պատմական հաղթանակ տարավ Հայրենական Մեծ պատերազմում ընդդեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների։

Լենինի-Ստալինի՝ մարտերում փորձված պարտիայի գլխավորությամբ հզոր սովետական ժողովուրդը վստահորեն ընթանում է, առաջ, դեպի իր նվիրական նպատակը — դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը մեր երկրում։

Ս. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎ

---

# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՆԱԽԱՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Այս տարի լրանում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակը։ Ի պատիվ պանծալի հոբելյանի, ամբողջ երկրում ծավալվել է համաժողովրդական սոցիալիստական մրցության հզոր ալիքը։ Սովետական մարդիկ վճռել են Մեծ Հոկտեմբերի փառապանծ տարեդարձը նշանավորել տարեկան պլանները ժամկետից շուտ կատարելով։

Արձագանքելով լենինգրադցիների կոչին, Երևան քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները միացան Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցությանը և կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին՝ ի պատիվ Մեծ Հոկտեմբե-

րի 30-րդ տարեդարձի տարեկան պլանները կատարել ժամկետից շուտ, մինչև տարեդարձի օրը։

Քաղաքի ձեռնարկությունների կոլեկտիվների մեծ մասը լավ են գիտակցել, որ ստանձնած պարտավորությունների հաջող կատարումը կախված է մեր ձեռնարկությունների բոլոր բանվորների, բանվորուհիների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի և ծառայողների անձնվեր, արդյունավետ աշխատանքից։

Մրցելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու համար, քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները համախառն արտադրանքի ինն ամսվա պլանը կատարեցին 108,2 տոկոսով։ Երևան քաղաքի այն 48 ֆաբրիկաներից ու գործարաններից, որոնք պարտավորություն էին ստանձնել տարեկան պլանը կատարելու մինչև փառապանծ հոբելյանի օրը՝ նոյեմբերի 7-ը, միութենական և տեղական արդյունաբերության մոտ 20 ձեռնարկություններ ժամկետից շուտ արդեն կատարել են իրենց պարտավորությունները և տարեկան պլանից



ավելի երկրին տվել են 11 միլիոն 600 հազար ռուբլու արտադրանք։

Առաջավոր ձեռնարկությունների թըվումն են նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության նախաձեռնողները՝ Երևանի Ավտոդողերի գործարանը, Կաբելի գործարանը, Մարմարի գործարանը, Տետրակի ֆաբրիկան, Լայն սպառման մետաղյա իրերի գործարանը և այլ ձեռնարկություններ։

Այս հաղթանակը ձեռք է բերված համառ և քրտնաջան աշխատանքով, անդուլ պայքարով։

Երևանի Ավտոդողերի գործարանում, որը մտել է նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, ամեն օր ստուգվում է ցեխերի, բրիգադաների, հերթափոխերի ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը։ Ագիտացիայի լավագույն ձևերի լայն կիրառման շնորհիվ գործարանի յուրաքանչյուր բանվոր գիտե, թե ո՞ւմ է պատկանում առաջնությունը արտադրական պլանների կատարման գործում, և բորբոքվում է եռանդուն պայքարը բարձր ցուցանիշների համար։

Այս ամենի շնորհիվ գործարանը դեռ սեպտեմբերի 20-ին ժամկետից շուտ կատարեց

տարեկան պլանը և այժմ լրացուցիչ պարտավորություն է ստանձնել մինչև այս տարվա վերջը կատարելու 1948 թվականի առաջին կիսամյակի պլանը, դրանով իսկ ամուր հիմք ստեղծելով գործարանի հնգամյա պլանը չորս տարում կատարելու համար։

Գործարանում առաջավոր է Թախչիման Գիշյանի բրիգադան։ Աշխատանքի տեղը լավ կազմակերպելու, աշխատանքային ժամանակն առավելագույն արդյունավետությամբ օգտագործելու շնորհիվ բրիգադան, որ նախատեսված 11 մարդու փոխարեն աշխատում է 7 մարդով, սիստեմատիկաբար գերակատարում է արտադրական առաջադրանքները։ Ընկ. Գիշյանի բրիգադան իր տարեկան պլանը կատարեց 7 և կես ամսում ու այժմ հաջողությամբ աշխատում է 1948 թվականի պլանի հաշվին։

Ստանձնած պարտավորությունները հաջողությամբ է կատարում Կաբելի գործարանի կոլեկտիվը, որն այս տարվա 10 ամսվա պլանը կատարեց ինն ամսում՝ 109,8 տոկոսով, ըստ որում համախառն արտադրանքի սեպտեմբեր ամսվա պլանը կատարված է 160,3 տոկոսով։

Երևանի Մարմարի գործարանի, Տետրակի



ֆաբրիկայի և այլ ձեռնարկությունների կոլեկտիվները, աշխատանքի բարձր արտադրողական մեթոդները լայնորեն արմատավորելու, արտադրության կազմակերպումը արմատապես բարելավելու, տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու շնորհիվ, արդեն կատարել են իրենց տարեկան պլանները, ըստ որում յուրաքանչյուր բանվորի միջին արտադրանքը գերազանցում է պլանով նախատեսվածից։

Տասնյակ և հարյուրավոր բանվորներ հետևելով Մոսկվայի «Պարիժսկայա կոմունա» կոշկեղենի ֆաբրիկայի վարպետ, անվանի ստախանովական Վասիլի Մատրոսովի օրինակին, գործադրելով աշխատանքի նրա ռացիոնալ մեթոդները, հաջողությամբ կատարում և գերակատարում են արտադրական ծրագիրը։ Մատրոսովյան մեթոդով աշխատողներից՝ Երևանի կոշկեղենի ֆաբրիկանեբի ձևող բանվորներ Մ. Թումանյանը, Վ. Պետրոսյանը, Երևանի Կաշվի գործարանի առաջավորներ Ի. Լոբովը, Ա. Ղազարյանը, Թաղգահաշինական գործարանի դարբին Մ. Կոնցոյանը, կաբելագործներ Ա. Կարապետյանը, Ե. Յավորսկայան և հարյուրավոր այլ առաջավորներ հաջողությամբ կատարելով

1947 թվականի արտադրական ծրագրերը, ներկայումս աշխատում են 1948 թվականի պլանի հաշվին։

Երևանի Գյուղատնտեսական գործիքների գործարանի խառատ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Գուրգեն Ղազանչյանը քաղաքում առաջինը արդեն կատարել է իր հնգամյա ծրագիրը և այժմ աշխատում է 1951 թվականի նորմայի կատարման համար։ Մրցելով Ղազանչյանի հետ, նույն գործարանի խառատ Ա. Օհանյանը այս տարվա 8 ամսվա իր պլանը կատարեց 370 տոկոսով։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ հետ չեն մնում Երևանի երկաթուղային հանգույցը և մանավանդ դեպոն։ Անվանի մեքենավարներ Ա. Հովակիմյանը և Ա. Ստեփանյանը միշտ ժամանակին տեղ հասցնելով ծանրաքարշ գնացքները, վառելանյութի մեծ խնայողություն են կատարել։ Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ առաջնությունը պատկանում է Երևանի դեպոյի անվանի մեքենավար, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Մանասար



Հարությունյանի շոգեքարշային բրիգադային։

Պայքարելով վառելանյութի ձմեռային պաշար ստեղծելու համար, Երևանի շոգեքարշային դեպոն 8 ամսվա ընթացքում տընտեսել է 326 տոննա վառելանյութ։

Սովետական մարդիկ, որոնց համար սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները անխախտ օրենք են, այսպես են պայքարում հանուն պլանների կատարման։

Մեր երկրի աշխատավորները բազմամյա փորձով համոզվել են, որ սոցիալիստական մրցությունը սոցիալիստական շինարարության լավագույն մեթոդն է, որ սոցիալիստական մրցությունը ստեղծում է աշխատանքի ավելի բարձր արտադրողականություն, որը,— ինչպես Լենինն է ասել,— ամենակարևորը, ամենագլխավորն է մեր հասարակակարգի հաղթանակի համար։

Ընկեր Ստալինը մեզ սովորեցնում է, որ սոցիալիստական մրցությունը աշխատավորների միլիոնավոր մասսաների առավելագույն ակտիվության հիման վրա սոցիալիզմի կառուցման կոմունիստական մեթոդն է։

Իբրև իսկական ժողովրդական շարժում,

սոցիալիստական մրցությունը միշտ ծնում է նորը։ Այս բանն ամենից առաջ դրսևորվում է բանվորների, ինժեներների, տեխնիկների ստեղծագործական նախաձեռնության անշեղ աճման միջոցով, աշխատանքի այնպիսի մեթոդների ու եղանակների մշակման ոսման միջոցով, որոնք բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը։

Արդյունաբերության մեջ արտադրանքի քանակի աճը հիմնականում կատարվում է աշխատանքային պրոցեսների ռացիոնալացման և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու միջոցով։ Ուստի պայքարը աշխատանքի արտադրողականության պլանների կատարման համար պետք է մշտապես գտնվի ուշադրության կենտրոնում։

Երևան քաղաքի առաջավոր արդյունաբերական ձեռնարկությունները՝ Ավտոդողերի գործարանը, Կաբելի գործարանը, Ձերժինսկու անվան գործարանը, Յուղի-ճարպի կոմբինատը, Կոշիկի 1-ին ու 3-րդ ֆաբրիկաները և այլն, հասել են աշխատանքի արտադրողականության զգալի աճման։

«Կոմունիզմն սկսվում է այնտեղ,— գրել է Լենինը,— որտեղ դրսևորվում է շարքային բանվորների անձնվեր, ծանր աշխատանքը



հաղթահարող հոգատարությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին»։

Հենց այսպիսի ջերմ հոգատարություն են ցուցաբերում միլիոնավոր բանվորները, ինժեներներն ու տեխնիկները, որոնք ակտիվ կերպով մտել են սոցիալիստական մրցության մեջ հետպատերազմյան ստալինյան հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու համար։

Աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարում հատուկ նշանակություն ունի օրական-հերթափոխային առաջադրանքների կիրառումը։ Այդպիսի առաջադրանքներն իրենց լիովին արդարացրել են։ Ինչպես ցույց է տալիս մեր շատ ձեռնարկությունների փորձը, օրական-հերթափոխային առաջադրանքը կազմակերպում է բանվորի աշխատանքը, բարձրացնում է նրա աշխատանքի արտադրողականությունը, քանի որ այն սովորաբար պլանավորվում է նկատի ունենալով նորմաների գերակատարումը։ Եթե բանվորը ունի օրական-հերթափոխային առաջադրանք, նա կարող է ավելի ճշգրիտ կերպով հաշվել իր ժամանակը և հետևել, թե ինչպե՞ս է կատարվում իր ստանձնած պարտավորությունը։

*Այն բարձր պլանները, որ ստանձնել են մեր ձեռնարկությունները, պարտավորեցնում են նրանց կոլեկտիվներին հաշվի առնել մինչև պանծալի հոբելյանը մնացած ժամանակամիջոցը, էլ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը ստանձնած պարտավորությունների կատարման համար, անձնվեր աշխատանքով օր-ավուր ապահովել արտադրական պլանների կատարումը։ Արտադրության առաջավորների բազմահազար բանակը պետք է անձնական օրինակ ցույց տա պարտավորությունների կատարման գործում և իր հետևից տանի ետ մնացողներին։ Այս դեպքում մրցությունն անկասկած կհասցնի դրական արդյունքների։*

*Յուրաքանչյուր օրը մեզ մոտեցնում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի երեսնամյակին։ Ավելի՛ լայն թափ հաղորդենք նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությանը, գործադրենք բոլոր ուժերն ու հնարավորությունները Մեծ Հոկտեմբերի փառապանծ տարեդարձի պատվին ստանձնած պարտավորությունները կատարելու և գերակատարելու համար։*

Մ. ԼԱԼԱՅԱՆ
ՀԿ(բ)Պ Երևանի քաղաքային Կոմիտեի
կազմ-հրահանգչական բաժնի վարիչ

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

## ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԱՆԿՈՐՈՒՍՏ ՀԱՎԱՔԵԼ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԸ

*Սովետական Հայաստանի կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների կողմից ընկեր Ստալինին ուղարկված նամակում պատվավոր և լուրջ պարտավորություններ են ստանձնել նաև մեր բամբակագործները, ծխախոտագործներն ու ճակնդեղագործները։*

*Բացի այն ընդհանուր պարտավորություններից, որ ստանձնել են առաջավոր շրջաններն ու կոլխոզները տեխնիկական կուլտուրաների մշակման ասպարեզում, հարյուրավոր բրիգադաներ և օղակներ, հազարավոր կոլխոզնիկներ և կոլխոզնիկուհիներ խոստացել են տեխնիկական կուլտուրաների ռեկորդային բերք աճեցնել, բոլշևիկյան կենդանի խոսքի վերածել ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փե-*

տըրվարյան պլենումի պատմական որոշումը՝ հետպատերազմյան շրջանում մեր սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին։

Հեկտարից 60-85 ցենտներ բամբակ, 20-25 ցենտներ ծխախոտ և 500-800 ցենտներ շաքարի ճակնդեղ—ահա՛ թե ինչպիսի մեծ ու հայրենասիրական նպատակ ունեն մեր առաջավորները, տեխնիկական կուլտուրաների բարձր բերքի վարպետները։

Մեծ առաջնորդին տված խոստումն օրինակելիորեն կատարելու և Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռեվոլյուցիայի պանծալի երեսնամյակը արժանավայել կերպով դիմավորելու համար, մեր ռեսպուբլիկայի բամբակագործները, ծխախոտագործներն ու ճակընդեղագործները անդուլ և լարված աշխատանք կատարեցին տեխնիկական կուլտուրաների ցանքի ու մշակության ընթացքում։ Այդ ամբողջ աշխատանքը կատարվեց ժամանակին, բարձր որակով, սովետական առաջավոր գիտության խոսքի ու բարձր ագրոտեխնիկայի պահանջների համաձայն։ Եվ որպես այդ ամենի արդյունք, այժմ մեր պլանտացիաներում աճել է բամբակի, շաքարի ճակնդեղի,



ծխախոտի և այլ տեխնիկական կուլտուրաների առատ բերք։

Սակայն քանի դեռ բերքը դաշտումն է, քանի դեռ այն չի հավաքված և պետությանը չի հանձնված, հաջողությունը չի կարելի ապահոված համարել։

Ահա՛ թե ինչու տեխնիկական կուլտուրաների բերքը ժամանակին և անկորուստ հավաքելը առաջնակարգ խնդիր է և պետական ու քաղաքական կարևորություն ունեցող գործ։

Ի՞նչպիսի ձեռնարկումներով կապահովվի տեխնիկական կուլտուրաների հաջող բերքահավաքն ու մթերումը։

Ամենից առաջ ուժեղ և հետևողական պայքար պետք է մղել բերքի կորուստների դեմ։ Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր կոլխոզնիկ պարզ ու լավ գիտակցի, թե բերքի կորուստից ինչպիսի մեծ վնաս են կրում հենց կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, մեր ամբողջ երկիրը։ Օրինակ, հաշիվները ցույց են տվել, որ յուրաքանչյուր ցենտներ բամբակի հումքի կորուստը մոտ 300 մետր կտորի և ավելի քան 10 կիլոգրամ բուսական յուղի կորուստ է նշանակում։

Իսկ ի՞նչ է պահանջվում բերքը անկորուստ

հավաքելու համար։ Դրա առաջին պայմանը բերքահավաքի ժամկետների ճիշտ պահպանումը և կազմակերպված աշխատանքն է։ Փորձը ցույց է տվել, որ բերքի ամենամեծ կորուստ տեղի է ունենում այն կոլխոզում, բրիգադայում կամ օղակում, որտեղ բերքահավաքն սկսվում է ուշացումով և անկազմակերպ։ Հակառակ այդ ճշմարտությանը, այնուամենայնիվ, մեր շատ կոլխոզներում դեռ շարունակում է գոյություն ունենալ այն սխալ ու վնասակար պրակտիկան, երբ բամբակի հասունացած բերքը չեն հավաքում, մինչև որ պլանտացիան ամբողջովին կամ, ինչպես ասում են, համատարած կերպով հասունանա, կնգուղները մասսայաբար բացվեն։ Իսկ այդ դեպքում արդեն հասունացած կնգուղներից բերքի մի մասը թափվում և կորչում է։ Նման երևույթը միանգամայն անթույլատրելի է։ Բերքահավաքը պետք է կատարել հատընտիր եղանակով, չսպասելով կնգուղների մասսայաբար բացվելուն։

Բամբակի բերքի կորստի մյուս պատճառը վատորակ աշխատանքն է, երբ բամբակը հավաքելիս նրա մի մասը թողնվում է կնգուղի մեջ։ Եթե բամբակենու յուրաքանչյուր թուփի վրա մնա չհավաքած թեկուզ կես գրամ բամ-



բակ, ապա ամբողջ հեկտարից կորուստը կկազմի 50-60 կիլոգրամ, հաճախ նույնիսկ մեկ ցենտներից էլ ավելի։ Իսկ ի՞նչպիսի չափերի կհասնի կորուստը ամբողջ ցանքատարածությունից։

Վերևում հիշատակված պատճառներով, այսինքն բերքը ուշացումով հավաքելու, ինչպես նաև բերքահավաքի սահմանված կանոնները չպահպանելու հետևանքով ոչ փոքր կորուստ է լինում նաև ծխախոտի ու շաքարի ճակրնդեղի բերքից։ Այնինչ որոշ տեղերում ծխախոտի բերքահավաքը անթույլատրելի կերպով ձգձգվում է։ Չնայած որ ծխախոտի տերևաքաղի առավելագույն ժամկետ մեզ մոտ սահմանված էր հոկտեմբերի 1-ը, դաշտերում դեռ բավականաչափ բերք կա հավաքելու։

Ծխախոտի բերքի զգալի կորուստ տեղի է ունենում նաև բերքի փոխադրման, տամկացման ու չորացման ընթացքում, որի դեմ նույնպես պետք է վճռական պայքար մղել և նվազագույնի հասցնել։

Ինչ վերաբերում է շաքարի ճակնդեղին, ապա այստեղ կորուստը կարող է տեղի ունենալ բերքահավաքի բոլոր պրոցեսներում։ Ապացուցված է, որ հավաքված ճակնդեղը ուշացումով մթերակայան փոխադրելը մեծ

կորուստի պատճառ է դառնում։ Չենց միայն
թառամելու հետևանքով յուրաքանչյուր օր
ճակնդեղը կորցնում է իր շաքարայնության
մեկ տոկոսը. էլ չենք խոսում առհասարակ
ճակնդեղի քանակական կորստի մասին, որ
կարող է առաջ գալ զանազան պատճառնե-
րից։

Ուստի անհրաժեշտ է հետևողական պայ-
քար մղել բերքի կորուստների դեմ։ Բերքա-
հավաքին մասնակցող յուրաքանչյուր կոլ-
խոզնիկի և կոլխոզնիկուհու մեջ պետք է ար-
մատավորվի ազնիվ սոցիալիստական վերա-
բերմունք դեպի աշխատանքը։ Բերքը պետք է
հավաքել այնպես, որ տեղի չունենա ոչ մի
քուլա բամբակի, ոչ մի տերև ծխախոտի և ոչ
մի հատ ճակնդեղի կորուստ։ Ահա այս է
գլխավորը բերքահավաքի աշխատանքներում,
որի վրա պետք է բևեռել կոլխոզնիկների ու
կոլխոզնիկուհիների ուշադրությունը։

Ինչպես ասացինք, տեխնիկական կուլտու-
րաների բերքը անկորուստ հավաքելու համար
նախ և առաջ պետք է պահպանել բերքահա-
վաքի ժամկետները։ Հասկանալի է, որ այդ
ժամկետները կարելի է պահպանել միայն
այն դեպքում, եթե բարձր է կոլխոզնիկի աշ-
խատանքի արտադրողականությունը, եթե



բերքահավաքին մասնակցողները կատարում
և գերակատարում են արտադրական նորմա-
ները։ Դրան հասնելու ամենափորձված
միջոցն է սոցիալիստական մրցությունը։

Անցյալ տարի չանաքավորների մեջ սկիզբ
առավ «հարյուրկիլոգրամականների» հիանա-
լի շարժումը։ Բավական մեծ էր այն կոլխոզ-
նիկուհիների թիվը, որոնք օրական հավաքում
էին 100 կիլոգրամ բամբակ։ Այս տարի այդ
շարժումը նոր թափ է ստանում և, ինչպես
ցույց են տալիս փաստերը, շատ չանաքավոր-
ներ հավաքում են օրական 100 կիլոգրամից
ավելի բամբակ։ Օրինակ՝ Էջմիածնի շրջանի
Արևշատ գյուղի կոլխոզում Հ. Մալխասյանը,
Ք. Սարգսյանը և Թ. Գրիգորյանը օրական
հավաքում են 120—125 կիլոգրամ բամբակ։
Արտաշատի շրջանի Դարղալու գյուղի կոլ-
խոզում Բ. Ալեքսանյանը, Ջ. Վարդանյանը,
Մ. Աբրահամյանը, Ա. Ավագյանը և ուրիշնե-
րը օրական հավաքում են 150-180 կիլոգրամ
բամբակ։

Այս առաջավորների աշխատանքի փորձը
պետք է լայնորեն մասսայականացնել, ձըգ-
տելով ընդհանուր վերելքի։ Հոկտեմբերյանի
շրջանի Ջրաշեն և Մրգաշատ գյուղերի կոլ-
խոզներում օղակավարուհիներ Հ. Սիմոնյանի

և Ն. Ավետիսյանի օղակները ժամկետից շատ առաջ՝ հոկտեմբերի 10-ին կատարեցին բերքատվության առաջադրանքը և արդեն զգալի չափով գերակատարել են պետությանը բամբակի հումք հանձնելու պլանը։ Այս հաջողությունը սոցիալիստական մրցության արդյունքն է։ Այդ օղակների բոլոր անդամները մշտապես գերակատարում են շանաքի նորմաները։

Անհրաժեշտ է լայնորեն մասսայականացնել առաջավոր բրիգադաների, օղակների, կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների ձեռք բերած նվաճումները, ընդօրինակել նրանց աշխատանքի փորձը։ Առաջավոր փորձի տարածումն ու պրոպագանդան պետք է դրվի սոցիալիստական մրցության հիմքում, իբրև դաստիարակչական լավագույն միջոց, որը մեծ չափով նպաստում է ընդհանուր վերելքին։

Պայքար մղելով աշխատանքի բարձր արտադրողականության համար, միևնույն ժամանակ պետք է պայքարել նաև բարձր որակի համար։ Խնդիրն այն է, որ պետությանը հանձնվի ոչ միայն շատ, այլև բարձր որակի բամբակ, ծխախոտ, շաքարի ճակնդեղ։



Կարճ ժամանակ է մնացել մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի պանծալի երեսնամյակը։ Մեր ամբողջ Սովետական երկիրը մեծագույն խանդավառությամբ, արտադրական նորանոր նվաճումներով է ընթանում դեպի փառապանծ հոբելյանը։

Անկորուստ հավաքելով և պետությանը հանձնելով տեխնիկական կուլտուրաների բերքը, մեր ռեսպուբլիկայի բամբակագործները, ծխախոտագործներն ու ճակնդեղագործները պատվով կկատարեն մեծ առաջնորդ ընկեր Ստալինին տված խոստումը, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փառապանծ տարեդարձը կնշանավորեն փայլուն նվաճումներով։

Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

«Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումով զինված, խանդավառությամբ ընդունելով ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագիրը՝ գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին, սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինին խոսք տվին բարձրացնել սոցիալիստական դաշտերի բերքատվությունը և առաջին կոչից կատարել իրենց պարտավորությունը հարազատ պետության հանդեպ։

Մեր երկրի կոլխոզային գյուղացիությունը սրբությամբ է կատարում իր խոստումը։



Ռեսպուբլիկաների մեծ մասում այս տարի բարձր բերք են հավաքում։ Համարյա բոլոր միութենական ռեսպուբլիկաները, ՌՍՖՍՌ-ի, Ուկրաինական ՍՍՌ-ի և միջին-ասիական ռեսպուբլիկաների շատ մարզեր արդեն կատարել են հացամթերման տարեկան պլանները և պլանից ավելի տասնյակ միլիոնավոր փութ հացահատիկ են հանձնում հարազատ պետությանը՝ ի բարօրություն սոցիալիստական Հայրենիքի։

Հերթը սոցիալիստական անասնապահության ֆրոնտի աշխատողներինն է, որոնցից Հայրենիքը պահանջում է անասնապահության ասպարեզում ևս ստեղծել նույնպիսի բուռն վերելք։ Սովետական պետությունը բարձր է գնահատում մեր անասնապահության ֆրոնտի աշխատողների ջանքերը, ինչպես որ նա բարձր էր գնահատում սոցիալիստական հողագործության աշխատողների, բամբակագործների, ճակնդեղագործների ջանքերը։

Սոցիալիստական անասնապահության ֆրոնտի աշխատողների նկատմամբ ստալինյան հոգատարության վառ արտահայտությունն է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը «Անասնաբուծու-

թյան բարձր մթերատվության հասնելու համար կոլտնտեսներին, սովխոզների և ձիաբուծարանների աշխատողներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին», որ վերջերս հրապարակվեց թերթերում։ (Տե՛ս «Սովետական Հայաստան», սեպտեմբերի 19-ի համարը)։

Աշխատանքը մեզ մոտ վաղուց է դարձել պատվի, փառքի և հերոսության գործ, իսկ աշխատանքում առաջավորները միշտ բարձր խրախուսանքի են արժանանում։ Այդպես էլ անասնապահության ֆրոնտում։ Անասնապահության զարգացումը կարևոր տեղ է գրավում գյուղատնտեսության վերելքի գործում։ Անասունների գլխաքանակի աճեցումը և նրանց մթերատվության բարձրացումը խոշոր նշանակություն ունի մեր երկրի արդյունաբերության համար, աշխատավորներին պարենամթերք մատակարարելու տեսակետից։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը մի հուժկու ազդակ է, որը մեծ շահագրգռվածություն առաջացնելով անասնապահության ֆրոնտում աշխատող յուրաքանչյուր կոլտնտեսիկի մեջ, նրան դրդում է նորանոր հնարավորություններ գտնել



պետության սահմանած պլանները կատարելու և գերակատարելու համար։

Հրամանագիրը մեծ խանդավառությամբ ընդունեցին Սովետական Հայաստանի անասնապահության ֆրոնտի աշխատողները, որոնք խոստանում են հանուն մեր Հայրենիքի բարօրության ծավալել մասսայական մրցություններ սոցիալիստական անասնաբուծության բուռն վերելքի համար, անասնապահության ֆրոնտում բարձր ցուցանիշների հասնելու համար։

Սակայն պետք է հիշել, որ անհատական ռեկորդները նպատակ չեն, դրանք միայն միջոց են մասսայական մասշտաբով բարձր ցուցանիշների հասնելու համար։ Անհատական ռեկորդներից անցնել մասսայական չափերով բարձր արտադրողականության—այդ է գլխավոր խնդիրը։

Յուրաքանչյուր անասնապահ պետք է լավ հիշի, որ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում կամ բարձր պարգև կարող է ստանալ միայն այն դեպքում, եթե կոլխոզը կամ սովխոզը ամբողջապես կատարել են պետության կողմից սահմանված անասնապահության զարգացման պլանը, ինչպես նաև, եթե կոլխոզը կամ սովխոզը կատարել

են պետության հանդեպ իրենց պարտավորությունները: Ուստի, ամեն մի կոլխոզնիկ, սովխոզի բանվոր շահագրգռված պետք է լինի կատարելու և գերակատարելու, ոչ միայն իր պլանը, այլև ամբողջ կոլխոզի, սովխոզի պլանը:

Բարձր կոչման կամ պարգևի արժանանալու համար այժմ գլխավոր խնդիրն է՝ հասնել առաջավորների մակարդակին, որոնք հարուստ փորձի կիրառումով, աշխատանքի խելացի կազմակերպումով հասել են բարձր ցուցանիշների: Իսկ հասնել առաջավորների մակարդակին— այդ կնշանակի ստեղծել մասսայական և բուռն վերելք սոցիալիստական անասնաբուծության զարգացման ասպարեզում:

Մոտենում է ձմեռը—անասնապահության մեջ ամենապատասխանատու շրջանը: Յուրաքանչյուր անասնապահ իրեն պետք է հաշիվ տա, թե անասունները ձմռան համար լրիվ ապահովվա՞ծ են կերով, տաք, լուսավոր, մաքուր գոմերով: Ձմեռը վճռական շրջան է անասնաբուծության համար, ուստի այն պետք է դիմավորել կազմ ու պատրաստ:



Մեր Հայրենիքի աշխատավորների նյութական բարեկեցության հետագա բարելավման համար ավելի՛ շատ միս, կաթ, յուղ, արդյունաբերության համար ավելի՛ շատ հումք—այս պետք է լինի անասնապահության ֆրոնտի ամեն մի աշխատողի լոզունգը:

***

Հրապարակվել է նաև ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը «Կարտոֆիլի բարձր բերք ստանալու համար կոլխոզնիկներին, ՄՏ կայանների, սովխոզների և օժանդակ տնտեսությունների աշխատողներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին»: (Տե՛ս «Սովետական Հայաստան», սեպտեմբերի 20-ի համարը):

Կարտոֆիլի բերքի բարձրացումը կարևոր նշանակություն ունի աշխատավորներին պարենամթերք և արդյունաբերությանը հումք մատակարարելու գործի բարելավման համար: ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը ուժեղ խթան կհանդիսանա կարտոֆիլի բերքատվությունը

բարձրացնելու գործում։ Հրամանագրի համաձայն Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում է շնորհվում հեկտարից առնվազն 500 ցենտներ կարտոֆիլի բերք ստանալու համար։

Հնարավո՞ր է արդյոք այդպիսի բերք ստանալ։ Այո, հնարավոր է։ Այդ մասին են վկայում առաջավորների օրինակը, նրանց փորձը։ Սովետական Հայաստանի կոլխոզներում քիչ չեն այնպիսի առաջավորներ, որոնք հեկտարից 500 ցենտներից շատ ավելի կարտոֆիլ են ստացել։ Նոր Բայազետի շրջանի Նորատուս գյուղի Մոլոտովի անվան կոլխոզի Նինա Համբարձումյանի օղակը անցյալ տարի հեկտարից ստացավ 1200 ցենտներից ավելի կարտոֆիլ։

Կարտոֆիլագործների համար չկա ավելի պատվավոր խնդիր, քան այդ առաջավորների օրինակին հետևելը։ Պետք է նայել նրանց, այդ առաջավորներին, թե նրանք ի՞նչպես են աշխատում, ի՞նչ են անում բարձր բերք ստանալու համար։

Մեր երկրին շատ կարտոֆիլ է պետք, իսկ շատ կարտոֆիլ կարելի է ստանալ կարտոֆիլի ցանքատարածությունը ավելացնելով և որ գլխավորն է բերքատվությունը բարձրացնե-



լով, իսկ առաջավորները գտել են բարձր բերք ստանալու եղանակը, ուստի պետք է հետևել նրանց։ Եթե մեզ մոտ առաջավորները լինեն ոչ թե միայնակներ, այլ հարյուրավորներ, հազարավորներ, մենք ավելի շատ կարտոֆիլ կունենանք որպես սննդամթերք և որպես հումք։

Կարտոֆիլի մասսայական բերքահավաքը սկսվել է—դա ամենապատասխանատու շրջանն է։ Կարտոֆիլագործների խնդիրն է արագ և անկորուստ հավաքել բերքը, կատարել պետական պարտավորությունները, ամբարել և պահպանել սերմացու կարտոֆիլը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը սահմանել է, որ Հրամանագրով նախատեսված կարտոֆիլի բերքատվության և ցանքատարածության ցուցանիշները, որոնց համար շնորհվում է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում և կատարվում է պարգևատրում ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով, գործում են 1947 և 1948 թվերին։

Կարտոֆիլագործները պետք է հենց այժմյանից անեն ամեն ինչ՝ բարձր ցուցանիշների հասնելու համար, բարձր կոչման և բարձր պարգևների արժանանալու համար։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԵՂԱԿԱՆ ԵՎ ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

*Երևանի Գյուղատնտեսական գործիքների գործարանին կից շահագործման է հանձնվել մետաղաձուլման նոր ցեխ։ Այդ ցեխն առաջինն է Հայաստանում, որտեղ ձուլումը կատարվելու է էլեկտրաէներգիայի միջոցով։ Ստացված չուգունը և պողպատը օգտագործվելու են գլխավորապես գյուղատնտեսական գործիքներ և լայն սպառման զանազան իրեր (կաթսաներ, վառարաններ և այլն) արտադրելու համար։*

***

*Այս տարի շահագործման կհանձնվի Երևանում կառուցվող Հախճապակու գործարանը, որը տարեկան արտադրելու է 800 հազար հատ զանազան ամանեղեն և 24 հազար*



*հատ կենցաղային-սանիտարական պարագաներ։*

***

*Նույն գործարանին կից կառուցվում է կաֆելի և երեսապատման աղյուսի ցեխ, որը տարեկան արտադրելու է 3 միլիոն հատ երեսապատման և 300 հազար հատ կաֆելի աղյուս։ Ցեխի սարքավորումն արդեն ստացվել է։*

***

*Այս տարվա վերջին շահագործման է հանձնվելու Երևանի քիմիական (կարբիդի) գործարանին կից կառուցվող պլաստմասսայի ցեխը, որն աշխատելու է տեղական հումքով և տարեկան տալու է 200 տոննա արտադրանք (ափսեներ, բաժակներ և այլն)։*

***

*Երևանի 3-րդ կոշիկի գործարանը, որը կառուցվել է Հայրենական պատերազմի տարիներին, այժմ ընդարձակվում է։ Լրիվ շահագործման հանձնելուց հետո, գործարանը տարեկան կարտադրի մեկ միլիոն զույգ կոշիկ։*

***

*Կահույքի նոր խոշոր գործարան է կառուցվում Երևանում, որի մի շարք ցեխերն ար-*

*կեն տալիս են առաջին արտադրանքը։ Գործարանը լրիվ շահագործման կհանձնվի 1948 թվականին և տարեկան կտա մեկ միլիոն ռուբլու արտադրանք։*

***

*1948 թվականին Երևանում շահագործման է հանձնվելու ներկեր, լաք և օլիֆ արտադրող գործարանը։ Արդեն գործում է չոր ներկեր արտադրող ցեխը։ Գործարանը, լրիվ կարողությամբ աշխատելով, տարեկան կարտադրի 2500 տոննա զանազան ներկեր, լաք և օլիֆ։*

***

*Լենինականում կառուցվում է մետաղամըշակման, փայտամշակման և չափիչ գործիքների խոշոր գործարան, որի սարքավորումն արդեն ստացվել է։ Գործարանի որոշ ցեխեր արտադրանք կտան 1948 թ. ընթացքում, իսկ ամբողջ գործարանը շահագործման կհանձնվի 1950 թվականին։ Գործարանը կտա տարեկան 6 միլիոն ռուբլու արտադրանք։*

***

*Երևանում կառուցվող էլեկտրական պարագաների գործարանը արդեն այս տարվա վերջին կտա առաջին արտադրանքը։ Լրիվ կարողությամբ գործարանը շահագործման*



*կհանձնվի 1948 թվականին, երկրին տալով մեկ միլիոն 200 հազար հատ զանազան էլեկտրական պարագաներ (շտեպսելներ, վիլկաներ, լուսամփոփներ, աբաժուրներ և այլն)։*

***

*Լենինականի Տրիկոտաժ գործարանին կից կազմակերպվել է «Կոտոն» տեսակի լավորակ կանացի գուլպաների ցեխ, որը տարեկան տալու է 600 հազար զույգ արտադրանք։ Ցեխն արդեն հանձնված է փորձնական շահագործման և 1948 թվից կսկսի նորմալ աշխատանքը։*

***

*Բերիայի ռայոնում կառուցվում է գուլպայի խոշոր գործարան, որը տարեկան արտադրելու է 2 միլիոն 500 հազար զույգ գուլպա, նասկի և տրիկոտաժի սպիտակեղեն։ Առաջին արտադրանքը գործարանը կտա այս տարվա վերջին, իսկ լրիվ կարողությամբ շահագործման կհանձնվի 1949 թվականին։*

***

*Երևանի շրջակայքում, Զանգվի ափին կառուցվում է թղթի գործարան, որը շահագործման կհանձնվի 1950 թվականին։ Գործարանն աշխատելու է տեղական հումքով և տարեկան արտադրելու է 250 հազար տոննա թուղթ։*

***

*Լենինականում 1946 թվից գործում է «Լենպողպատ» արտելը, որտեղ աշխատում են արտասահմանից հայրենիք վերադարձած մի խումբ մասնագետներ։ Արտելն արտադրում է կողպեքներ, մկրատներ, մանկական խաղալիքներ և այլն։*

***

*1948 թվականից կսկսի արտադրանք տալ Մետաղյա ամանեղենի գործարանը, որը կառուցվում է Երևանում։ Գործարանը տարեկան կարտադրի 200 տոննա ալյումինե և 200 տոննա էմալապատ ամանեղեն։*

***

*Կաշվի նոր գործարանը, որ կառուցվում է Երևանում, տարեկան կտա 6 միլիոն քառակուսի դեցիմետր փափուկ կաշի և 75 տոննա պադոշ։ Գործարանի մի շարք ցեխեր արդեն արտադրանք են տալիս։ Լրիվ կարողությամբ գործարանը շահագործման կհանձնվի 1948 թվականին։*

***

*Տարեկան 100 տոննա չոր սոսինձ է տալու Երևանում կառուցվող սոսնձի գործարանը, որը շահագործման կհանձնվի 1948 թվականին։*



***

*Երևանում կառուցվում է մետաղյա լայն սպառման առարկաների գործարան, որը լրիվ կարողությամբ կգործի այս տարվա վերջից։ Գործարանը տարեկան արտադրելու է 10 հազար մահճակալ և 50 հազար հատ ցինկապատ ու չուգունե ամանեղեն։*

*Գործարանին կից կազմակերպված է մետաղյա գեղեցիկ սպասքի (սերվիզի) արտադրման ցեխ, որտեղ աշխատում են արտասահմանից հայրենիք վերադարձած մասնագետ բանվորներ։*

***

*Մետաղամշակման գործարաններ են կառուցվում Կիրովականում, Արտաշատում, Ղափանում, Գորիսում, Էջմիածնում, Նոր Բայազետում։ Էջմիածնի, Գորիսի և Կիրովականի գործարանների կառուցումը կավարտվի այս տարի, իսկ մյուսներինը՝ 1948 թվականին։ Այդ գործարաններից յուրաքանչյուրը տարեկան տալու է 650 հազար ռուբլու արտադրանք—գյուղատնտեսական գործիքներ և լայն սպառման առարկաներ։*

***

*Ընդարձակվում է Երևանի դպրոցական պիտույքների գործարանը, որտեղ նախատես-*

ԳԻՆԸ 1 Ռ.

վում է նաև դաշնամուրների արտադրություն։

***

Կիրովականում կառուցվող տրիկոտաժի նոր գործարանը տարեկան կտա 2 միլիոն 700 հազար կտոր տրիկոտաժյա զանազան գործվածքեղեն։ Տրիկոտաժի գործարան է կառուցվում նաև Գորիսում։ Գործարանը տարեկան տալու է 600 հազար կտոր զանազան տրիկոտաժեղեն։

***

Արտաշատում, Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղում, Էջմիածնում և Ալավերդու շրջանի Սանահին գյուղում կառուցվում են կղմինդրի գործարաններ։ Գործարաններից յուրաքանչյուրը տարեկան կարտադրի 200-300 հազար կղմինդր։

— ✪ —

Պատ. խմբագրի տեղակալ՝

Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՎՖ 03398 Պատվեր 1271 Տիրաժ 9600
Ստորագրված է տպագրության 11/X 1947 թ.
Պոլիգրաֆ և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
Блокнот Агитатора